Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1958

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, 11 հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։



# ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Այս օրերին Կոմունիստական պարտիայի ու սովետական ժողովրդի կյանքում մեծ և նշանակալից իրադարձություններ են տեղի ունենում։ Ամբողջ Սովետական երկիրը մեծ սիրով ու ուշադրությամբ, հանգամանորեն ու մանրակրկիտ քննարկում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Խրուշչովի զեկուցման ու կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի և Մինիստրների Սովետի թեզիսները։

Սովետական երկրի տարբեր մասնագիտությունների տեր հազարավոր մարդիկ՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության բնագավառներում աշխատողներ, տեխնիկ-





ներ, գիտության գործիչներ, պարտիական, սովետական, տնտեսական ու արհմիութենական օրգանների աշխատողներ հարազատ երկրի ապագայի նկատմամբ պատասխանատվության բարձր գիտակցումով լի մասնակցում են համաժողովրդական այն խնդիրների քննարկմանը, որոնց կենսագործումը վճռական քայլ կհանդիսանա կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման և ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի լուծման համար։

Մարդկության պատմության մեջ դեռ երբեք և ո՛չ մի երկրում, ո՛չ մի ժողովուրդ չի քննարկել իր ապագա կյանքի պլանները, ժողովրդական տնտեսության զարգացման պլանները, ինչպես այդ արվում է սովետական երկրում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն ինչպես միշտ, այս անգամ ևս մեր երկրի տնտեսական զարգացման առաջիկա յոթնամյա պլանի վերաբերյալ այդ կարևոր փաստաթուղթը ներկայացրեց սովետական հասարակության լայն քննարկմանը, որպեսզի այնուհետև հաշվի առնելով աշխատավորների առաջարկությունները ու դի-



տողությունները, ընդունի համապատասխան դիրեկտիվներ։

Հայաստանի աշխատավորներն ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին մեծ գոհունակությամբ ընդունեցին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջիկա յոթնամյակի կոնտրոլ թվերը, որի մեջ իր վառ արտահայտությունն է գտել Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության վարած լենինյան ազգային քաղաքականությունը։ Ամենուրեք մեր ռեսպուբլիկայի մարդիկ քննարկում են այդ կարևոր փաստաթուղթը և անում լուրջ առաջարկություններ։ Ամենքին մոտիկ են և ամենքին հուզում են, և չեն կարող չհուզել, այն մեծ կառուցումները, որոնք կատարվելու են հենց մեր ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում, այն մեծ նախատեսումները, որ պետք է իրագործվեն գիտության մեջ, և որոնք խոսում են այն մասին, որ համաձայն Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի, ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է 2,2 անգամ։

Ակտիվորեն մասնակցելով յոթնամյակի կոնտրոլ թվերի քննարկմանը, ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության բնագավառի աշխատողները բազմաթիվ արժեքավոր առաջարկություններ են անում։ Եվ դա պատահական չէ։ Չէ՞ որ ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճելու է ավելի քան 3,4 անգամ։ Բացի դրանից, յոթնամյակում քիմիական արդյունաբերության մեջ որպես հումք և վառելիք լայն չափով կկիրառվի եղբայրական Ադրբեջանից ստացվող բնական գազը։ Այդ կապակցությամբ մասնագետներին խորապես հուզում է այն հարցը, թե ինչպես բնական գազը ռացիոնալ կերպով օգտագործել։ Նրանք այժմվանից առաջարկություններ են անում ռեսպուբլիկայի ձեռնարկությունների աշխատանքը զուգակցելու և արտադրությունը կոոպերացնելու մասին։

Որոշ մասնագետներ առաջարկություններ են արել գազի-սինթեզի էֆեկտիվ օգտագործման եղանակների մասին, որը մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության համար բնական գազից հետո երկրորդ հումքն է հանդիսանալու։ Ոմանք էլ առա-



ջարկություններ են արել ացետիլենի արտադրությունը կազմակերպել ոչ թե կարբիդի, այլ հիմնական մեթանի միջոցով, որը բնական գազի կոմպոնենտն է, նրա բաղկացուցիչ մասը։

Տեղերից հարց է բարձրացվել՝ Կիրովականի քիմիական կոմբինատում կազմակերպել ացետիլենի արտադրություն և այն կոոպերացնել ամյակի արտադրության հետ։ Կամ նույն կոմբինատում կազմակերպել պլաստմասսայի արտադրություն մելամինի և մոչևինի բազայի հիման վրա, ինչպես նաև ստեղծել կոպրոլակտիմի արտադրություն։ Որոշ ընկերներ նպատակահարմար են գտնում մեթանի և գազի-սինթեզի օգտագործման հիման վրա ռեսպուբլիկայում կառուցել նոր քիմիական կոմբինատ։

Յոթնամյակում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվելու ռեսպուբլիկայի մեքենաշինության բոլոր ճյուղերի արագ զարգացմանը։ Բավական է նշել, որ մեքենաշինության և մետաղամշակության համախառն արտադրանքը նոր ձեռնարկությունների շահագործման և գործող արտադրական կարողությունների ընդլայնման շնորհիվ ավելանալու է 3,6 անգամ, այդ թվում էլեկտրատեխնիկական արդյունաբերությա-

նը՝ 3,3 անգամ, սարքաշինությանը՝ 5,6 անգամ, հաստոցաշինությանը և գործիքաշինությանը՝ 7,7 անգամ։ Ելնելով մեքենաշինության արդյունաբերության բուռն աճից, ռեսպուբլիկայի այդ բնագավառի մի շարք աշխատողներ կոնկրետ առաջարկություններ են արել մասնագիտացնելու և կոոպերացնելու բոլոր նույնատիպ արդյունաբերության ձեռնարկությունների աշխատանքը։ Առաջարկվում է մեր ռեսպուբլիկայում մեքենաշինության բնագավառում զարգացնել գլխավորապես ոչ մետաղատար մեքենաների ու հաստոցների արտադրությունը, օգտագործել ներքին ռեսուրսները, բարձրացնել մեքենաշինության կադրերի որակավորումը։

Փայտամշակման և անտառային արդյունաբերության ասպարեզում աշխատողները անհրաժեշտ են գտնում կարգավորել ասորտիմենտի տեղաբաշխումը կահույքի արդյունաբերության ձեռնարկությունների միջև։ Այդ առաջարկությունների հեղինակները նշում են, որ կահույքի արդյունաբերության ձեռնարկություններում ոչ մեծաքանակ արտադրանքը, մանավանդ արտադրության ջատ թվով ասորտիմենտը սահմանափակում են կահույքի արտադրության պրոցեսների մեքենայացման հնարավորությունները։



Մինչդեռ, համաձայն ռեսպուբլիկայի տնտեսական զարգացման յոթնամյակի կոնտրոլ թվերի, անտառային և փայտամշակման արդյունաբերությունը պետք է զգալիորեն ընդլայնվի։ Միայն կահույքի արտադրությունը 1965 թվականին կհասնի 140 միլիոն ռուբլու, 1958 թվականի 77 միլիոն ռուբլու դիմաց, այսինքն՝ կաճի ավելի քան 1,8 անգամ։ Այդ խնդրի կենսագործումը, ինչպես նշում են առաջարկությունների հեղինակները, կարող է իրականացվել միմիայն ռեսպուբլիկայի կահույքի արդյունաբերության բոլոր ձեռնարկությունների մասնագիտացման և արտադրության պրոցեսների մեքենայացման միջոցով։

Սպիտակի շրջանի մի շարք աշխատողներ հարց են բարձրացրել շրջկենտրոնում գտնվող շաքարի գործարանի հումքի բազայի հիման վրա ստեղծել նաև ռաֆինադ-շաքարի և այլ սննդամթերքների արտադրություն։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի մի շարք աշխատողներ անհրաժեշտ են գտնում յուրաքանչյուր կոլտնտեսությունում կազմել տնտեսության զարգացման հեռանկարային պլան, որպեսզի առաջիկա յոթնամյակում կանխատեսվի տվյալ տնտեսության անսխալ զարգացումը։

Ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսներում ասված է, որ 1959—1965 թվականների ընթացքում խաղողի արտադրությունը մեր ռեսպուբլիկայում կավելանա 2,9 անգամ, իսկ պտղի արտադրությունը՝ 3 անգամ։

Եթե այժմ մեր ռեսպուբլիկան ունի 22 հազար հեկտար խաղողի և գրեթե նույնքան էլ պտղատու այգիներ, ապա առաջիկա յոթնամյակի ընթացքում այն կկրկնապատկվի, այսինքն՝ կտնկվի 44 հազար հեկտար նոր այգի։ Թալինի, Կոտայքի և Արզնի-Շամիրամ ջրանցքների շնորհիվ այգիներով կծածկվեն դարերով անջրդի մնացած տասնյակ հազար հեկտար հողեր։

Այսպիսով, ռեսպուբլիկայի այգեգործության առջև լայն հեռանկարներ են բացվում առաջիկա յոթնամյակում։

Ահա թե ինչու հատկապես արժեքավոր և միանգամայն ժամանակին են ռեսպուբլիկայի խաղողագործների այն առաջարկությունները, որոնք վերաբերում են խաղողագործության աշխատանքների անհետաձգելի մեքենայացմանը և խաղողի վազերի լարային սիստեմին անցնելուն։ Մի շարք մասնագետներ արդեն ռացիոնալիզատորական առաջարկություններ են արել ԿԴ—35 տրակտորը կատարելագործելու



և այն խաղողի այգիների մշակությանը հարմարեցնելու մասին։

Ախուրյանի, Սպիտակի և Աղինի ճակնդեղագործները, քննարկելով յոթնամյակի կոնտրոլ թվերը, առաջարկություններ են արել իրենց հուզող հարցերի մասին։ Նրանք հարց են բարձրացրել իրենց շրջաններում ջրհան կայաններ, ոռոգման ջրանցքներ և ջրամբարներ կառուցել՝ ճակնդեղի մշակման հողերը ոռոգելու համար, որը հնարավորություն կտա յոթնամյակի ընթացքում շաքարի ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցնել 266 ցենտների, 226 ցենտների դիմաց և յոթնամյակի վերջում շաքարի ճակնդեղի արտադրությունը ռեսպուբլիկայում հասցնել 1 միլիոն 300 հազար ցենտների։

Ժողովրդական տնտեսության զարգացման պլանի կոնտրոլ թվերի համաժողովրդական քննարկումը կնպաստի մեր հնարավորությունները ավելի լրիվ հայտաբերելուն, գտնելու այդ խնդրի լուծման ճիշտ ուղիները և կնախապատրաստի ռեսպուբլիկայի աշխատավորությանը հաջողությամբ կենսագործելու Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը և մեր ռեսպուբլիկայի աշխատավորու-

թյան արժանի ավանդը մտցնելու Սովետական երկրի է՛լ ավելի հզորացման ու բարգավաճման գործում։

ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասսայականացման և համաժողովրդական քննարկման կազմակերպման գործում մեծ անելիքներ ունեն նաև մեր ագիտատորները։

Այժմ մեր ագիտատորների համար չկա ավելի պատվավոր և ավելի անհրաժեշտ խնդիր, քան յոթնամյակի կոնտրոլ թվերի վերաբերյալ ընկեր Խրուշչովի թեզիսների՝ մեր ժամանակի մեծագույն փաստաթղթի, մասսայականացման ու քննարկման կազմակերպումը, փաստաթուղթ, որտեղ ինչպես հայելու մեջ, արտացոլված են մեր Հայրենիքի ձեռք բերած հաջողությունները և նախագծված է նրա առավել փայլուն ապագան։

---

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲՐԻԳԱԴՆԵՐԸ

*Ռ. ԾԱՂԻԿՅԱՆ*

Մեծ Լենինի անունը կրող բազմամիլիոնանոց կոմերիտմիությունը ապրում է բերկրալից օրեր։ Միլիոնավոր երիտասարդ բանվորների ու բանվորուհիների, ինժեներների ու տեխնիկների ստեղծագործական միտքը կլանված է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման և կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման ու ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի թեզիսներով, այն ամենայն ուշադրությամբ ուսումնասիրելու և կյանքում կենսագործելու կարևորագույն գործով։

Այդ կարևոր փաստաթղթերի քննարկումը մեր երկրում առաջ բերեց ժողովրդի քաղաքական ու աշխատանքային նոր հզոր վե-

րելը։ Գործարաններում, ֆաբրիկաներում, կառույցներում, սովխոզներում, կոլտնտեսություններում, ուսումնական հաստատություններում և պետական հիմնարկներում տեղի ունեցող բազմամարդ ժողովներում աշխատավորները միահամուռ հավանություն են տալիս յոթնամյա պլանի կոնտրոլ թվերին և պատրաստակամություն հայտնում անշեղորեն կենսագործելու կոմունիստական շինարարության նոր էտապի՝ կոմունիզմի կառուցման վիթխարի խնդիրները։

Այդ ծրագրի մեջ սովետական մարդիկ տեսնում են լենինյան անմահ պատգամների կենդանի մարմնավորումը, այն համարում են իրենց կենսական, հարազատ գործը։

Աշխատավորների բազմամարդ ժողովներն ու միտինգները մեկ անգամ ևս ցույց են տալիս սովետական մարդկանց նվիրվածությունը հարազատ Կոմունիստական պարտիային։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները անհուն բերկրանքով ընդունեց սովետական երիտասարդությունը, նրա ավանգարդը՝ կոմերիտմիությունը, որի շարքերում ներկայումս կա շուրջ 18 միլիոն պատանի ու աղջիկ։



Թեզիսների քննարկման ժամանակ կոմերիտականներն ու երիտասարդները հավաստիացնում են հարազատ պարտիային, որ պատվով կկատարեն յոթնամյակը և ստանձնում են նոր, բարձր պարտավորություններ, հանդես գալիս խրախուսելի նախաձեռնություններով։ Երիտասարդության կողմից արվող հիանալի առաջարկությունների ու նախաձեռնությունների միջոցով հայտնաբերվում են արտադրության աճի ու կատարելագործման լրացուցիչ ռեզերվներ, գտնվում են արտադրանքի թողարկումն ավելացնելու, նրա որակը բարձրացնելու, ինքնարժեքը իջեցնելու և աշխատանքի ավելի ներգործուն ձևեր։

Մեր Հայրենիքի բոլոր ծայրերում՝ արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում, ուսումնական հաստատություններում և պետական հիմնարկություններում արդեն լայն թափ է առել կոմերիտականների ու երիտասարդների նախաձեռնությամբ կոմունիստական աշխատանքի բրիգադների ստեղծումը։ Այդ բրիգադների ստեղծման լուրը ալեկոծեց միլիոնավոր կոմերիտականների ու երիտասարդների։ Երիտասարդությունը կոմունիստական աշխատանքի բրիգադների

մեջ տեսնում է մրցության նոր, հիանալի բարձրագույն ձև, որը առավելագույն չափով համապատասխանում է մեր երկրի զարգացման արդի ժամանակաշրջանին։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաներ ստեղծելու գործում առաջինը հանդես եկան Մոսկվա—Ռյազան երկաթուղու Մոսկվա—Սորտիրովչնայա դեպոյի կոմունիստ և կոմերիտական բանվորները, այն նույն դեպոյի, որտեղ 1919 թվականին ծնունդ առան նշանավոր կոմունիստական շաբաթօրյակները, որոնք Վ. Ի. Լենինը անվանեց «Մեծ նախաձեռնություն»։

«Կոմունիզմը,— այն ժամանակ գրել է Լենինը,— կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է, կապիտալիստականի համեմատությամբ»։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաների ստեղծումը մի նոր երևույթ է մեր կյանքում։ Ստեղծելով այդ բրիգադաները մեր երիտասարդությունը պատվով կկատարի յոթնամյակի հոյակապ խնդիրները՝ կոմունիզմի կառուցման խնդիրները։

Սովետական յուրաքանչյուր պատանի ու աղջիկ մտնելով կոմունիստական աշխա-



տանքի բրիգադայի մեջ, լավ պատկերացնում է, որ պետք է աշխատի բարձր արտադրողականությամբ, կազմակերպված, խնայողաբար, օգնի արտադրության մեջ նոր տեխնիկայի ներդրմանը, այն ամենի կիրառմանը, ինչ առաջավոր է։

Կոմունիստական բրիգադայի յուրաքանչյուր անդամ պարտավոր է սիստեմատիկաբար ուսումնասիրել մարքս-լենինյան թեորիան, բարձրացնել իր արտադրական որակավորումը, զարգացնել հանրակրթական ու կուլտուրական մակարդակը, իր մեջ դաստիարակել մեր հասարակարգի մարդու լավագույն հատկանիշներ՝ լինել բազմակողմանի զարգացած, վարքով օրինակելի և հասարակական պարտականությունները ակտիվ կատարող։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի յուրաքանչյուր անդամ պետք է աշխատի և սովորի բարձր գիտակցությամբ, ցավի ընկերոջ, կոլեկտիվի և իր գործի համար։ Բրիգադայի անդամի նշանաբանը պետք է լինի «Մեկը ամենքի համար, ամենքը մեկի»։ Այսպիսի նշանաբանով պետք է աշխատեն կոմունիստական աշխատանքի բրիգադայի բոլոր անդամները։

Մանրամասն ուսումնասիրելով և ամ-

բողջ խորությամբ ընդունելով կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամ լինելու պատիվն ու պատասխանատվությունը, մեր ռեսպուբլիկայի բոլոր երիտասարդները հավանություն տվեցին մոսկվացիների նախաձեռնությանը և այժմ ջանք չեն խնայում այդ պատվավոր կոչումը արդարացնելու համար։

Կոմունիստական աշխատանքի նորանոր բրիգադաներ են ծնունդ առնում ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում և այժմ չկա մի գործարան կամ ֆաբրիկա, որտեղ այդ ուղղությամբ աշխատանք չտարվի։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաներ ստեղծելու գործում առաջինների շարքում քայլեցին Երևան քաղաքի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի, Հայէլեկտրո գործարանի, Կլարա Ցետկինի անվան կարի 1-ին ֆաբրիկայի, Կիրովի անվան կաշվի ֆաբրիկայի, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Կիրովականի քիմիական կոմբինատի և ուրիշ շատ ձեռնարկությունների կոմերիտական կազմակերպությունները։ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի 30—30 ա ցեխի կոմերիտականները այս օրերին ապրում են բուռն խանդավառությամբ։ Նրանք իրենց ցեխում կազմակերպեցին առաջին կոմու-



նիստական աշխատանքի բրիգադա ընկեր Վասպուրական Մխիթարյանի գլխավորությամբ։ Այս բրիգադան արտադրական նորմաները սիստեմատիկաբար կատարելու և գերակատարելու հետ միասին գյուտարարական հիանալի առաջարկություններ է անում, պայքարում է հումքի և էլեկտրաէներգիայի խնայողության համար։ Բրիգադայի բոլոր անդամները աշխատանքի հետ միասին սովորում են բաներիտ դպրոցներում, իսկ բրիգադիր Վ. Մխիթարյանը սովորում է մարքսիզմ-լենինիզմի գիշերային համալսարանում։ Օրերս գործարանի ԼԿԵՄ կոմիտեի նախաձեռնությամբ, գործարանի ակումբում տեղի ունեցավ երիտասարդ բանվորների հավաք, որտեղ կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամները պատմեցին իրենց կատարած աշխատանքների և հետագա անելիքների մասին։

Կոմունիստական աշխատանքի երկու բրիգադաներ են ստեղծվել Սպանդարյանի շրջանի Ս. Մ. Կիրովի անվան Կաշվի ֆաբրիկայում, որոնք աչքի են ընկնում իրենց արտադրական նորմաները ժամկետին կատարելով և բարձր որակի արտադրանք թողարկելով։ Ներկայումս երկու բրիգադաներն էլ կատարելով 1958 թվականի տնտե-



սական տարվա պլանները, աշխատում են 1959 թվականի հաշվին։ Ցրունզիկ Միքայելյանի բրիգադան, որին շնորհվեց կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչումը, 1958 թվականի արտադրական պլանը կատարեց 130 տոկոսով և հիմա աշխատում է 1959 թվականի հաշվին։ Նրանք պարտավորություն են վերցրել 7-ամյա պլանը կատարել 6 տարում, տալով միմիայն բարձր որակի արտադրանք։ Բրիգադայի բոլոր անդամները սիստեմատիկաբար զբաղվում են իրենց քաղաքական և գաղափարական մակարդակի բարձրացման հարցերով։

Երիտասարդության համար ներկայումս չկա ավելի պատվավոր գործ, քան յոթնամյակի խնդիրների կատարմանը ակտիվ մասնակից լինելը։

Մեր հարազատ պարտիան երիտասարդության համար ստեղծել է աշխատելու և սովորելու լայն հնարավորություններ։ Երիտասարդ բանվորների և բանվորուհիների, կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների առջև լայնորեն բաց են բաներիտ և գյուղերիտ դպրոցները, երեկոյան և հեռակա մասնագիտական, միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատու-



թյունների դռները։ Արտադրության մեջ աշխատող և սովորող երիտասարդներին առանց ջանք խնայելու օգնում են մեր ավագ, կոմունիստ ընկերները, որոնք իրենց հարուստ փորձը տալիս են կոմունիզմ կառուցող երիտասարդությանը։ Կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամները պետք է օգտագործեն ստեղծված այս լայն հնարավորությունները և դառնան մեր հարազատ Կոմունիստական պարտիայի իսկական օգնականն ու ռեզերվը։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի յուրաքանչյուր անդամ լավ աշխատելու և լավ սովորելու հետ միասին անհաշտ պայքար է մղելու հարբեցողության, խուլիգանության և կապիտալիզմի մյուս վնասակար մնացուկների դեմ։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամ լինելու պատվավոր կոչմանը արժանանալու են լավագույններից լավագույնները, որոնք պատվով կկատարեն հարազատ Կոմունիստական պարտիայի կողմից առաջադրված խնդիրները։

---

# ՊԼԱՆ, ՈՐՊԻՍԻՆ ԴԵՌ ՉԻ ԻՄԱՑԵԼ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Ի. ՑԻԼԻՊՈՎ

(Արտասահմանյան մամուլը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի մասին)

ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը» զեկուցման թեզիսները հրապարակվելուց անմիջապես հետո գտնվում էին համաշխարհային հասարակության ուշադրության կենտրոնում:

Մեր երկրի սահմաններից դուրս տարբեր քաղաքական ուղղությունների թերթեր ու ժուռնալներ ընդարձակ հաղորդագրություններ հրապարակեցին Սովետական Միության ժողովրդատնտեսական նոր հեռանկարային պլանի կարևորագույն առաջադրանքների մասին, լայնորեն քննարկում են այդ պլանի դերը Սովետական պետության



կյանքում և նրա միջազգային նշանակությունը:

ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակության կառուցման ծավալուն վեհ ծրագիրը մեծ, անկեղծ ուրախությամբ դիմավորեցին մեր բոլոր արտասահմանյան բարեկամները: Նրանք ջերմորեն ողջունում են յոթնամյա պլանը, որպես Սովետական Միության մի նոր անգնահատելի ներդրում խաղաղության և մարդկության սոցիալական առաջընթացի գործում:

«Այս վիթխարի պլանը,— գրում է չինական «Ժենմին ժիբաո» թերթը,— իր չտեսնըված հսկայական մասշտաբներով, զարգացման սրընթաց տեմպերով, խաղաղ մրցակցության մեջ իմերիալիզմը հաղթահարելու վճռականությամբ, դեպի կոմունիստական հասարակարգ տանող հսկայական քայլերով ցնծալից ուրախություն է առաջ բերել սոցիալիստական լագերում և պրոգրեսիվ մարդկության շրջանում: Մեր երկրի ժողովուրդը անսահմանորեն ուրախանում և ոգեշնչվում է Սովետական Միության՝ դեպի կոմունիստական հասարակարգ տանող այս վիթխարի քայլերով»:

Սոցիալիստական լագերի եղբայրական երկրների աշխատավորները չթուլացող հե-

տաքքրությամբ ծանոթանալով ՍՄԿԿ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների հետ, սովետական ժողովրդին հաջողությունների ջերմ ցանկություններ են հղում յոթնամյա պլանի վեհ նախաձեռնումների իրականացման գործում։ Այն զգացմունքները, որ այս օրերին ապրում են հզոր սոցիալիստական համագործակցության բոլոր երկրների աշխատավորները, շատ լավ է արտահայտել Պրագայի «ՉԿԴ— Ստալինգրադ» խոշորագույն գործարանի փականագործ ընկ. Կարել Գլոսմին։ «Սովետական ժողովուրդը,— ասել է նա,— կիրականացնի յոթնամյա պլանը և ընդհուպ կմոտենա կոմունիզմին։ Մեզանից՝ չեխոսլովակյան բանվորներից յուրաքանչյուրս սովետական եղբայրների հաջողությունների համար ուրախանում է այնպես, ինչպես սեփականի համար։ Մենք բոլորս գնում ենք դեպի մի ընդհանուր նպատակ»։

Ինչպես նշվում է ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում, յոթնամյա պլանի կատարումը նշանակում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության հետագա ամրապնդում։ Արտադրության արագ աճը ՍՍՌՄ-ում, ինչպես նաև սոցիալիզմի մյուս երկրներում, յոթնամյակի ընթացքում կհան-



գեցնի այն բանին, որ արդեն 1965 թվականին համաշխարհային սոցիալիստական սիստեմը կարտադրի ամբողջ աշխարհի արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին։ Այսպիսով, կարճ ժամկետում կապահովվի սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բացարձակ գերազանցությունը կապիտալիստական սիստեմի նկատմամբ նյութական արտադրության մեջ, այսինքն՝ մարդկային գործունեության վճռական ասպարեզում։

Ընդսմին սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տնտեսական հզորության ամրապնդման գործում վճռական ավանդ կներմուծի Սովետական Միությունը։ Յոթ տարիների ընթացքում ՍՍՌՄ-ը վիթխարի քայլ կկատարի հիմնական տնտեսական խնդրի լուծման ճանապարհին։ Յոթնամյա պլանի կատարման շնորհիվ Սովետական Միությունը բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ Եվրոպայում կգրավի առաջին տեղը։ Արտադրանքի մի քանի կարևորագույն տեսակների բացարձակ արտադրությամբ մեր երկիրը կգերազանցի, իսկ մյուս տեսակների արտադրությամբ կմոտենա ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքի ժամանակակից մակարդակին։ Յոթնամյակի վերջում ՍՍՌՄ-ում

գյուղատնտեսական կարևորագույն մթերքների՝ ամբողջությամբ վերցրած և բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքը կգերազանցի ԱՄՆ-ի ժամանակակից մակարդակը։ 1965 թվականից հետո մոտավորապես հինգ տարիների ընթացքում, գուցե և ավելի շուտ, Սովետական Միությունը աշխարհում առաջին տեղը դուրս կգա ինչպես արտադրության բացարձակ ծավալով, այնպես էլ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ, որը մեր երկրի համար կապահովի բնակչության կենսական ամենաբարձր մակարդակը աշխարհում։

Այսպիսով, կապիտալիզմի հետ խաղաղ մրցակցության մեջ սոցիալիզմը համաշխարհային-պատմական հաղթանակ կտանի։ Յոթնամյա պլանով նախատեսված այս վիթխարի հեռանկարները հանուն պայծառ ապագայի պայքարի են ոգեշնչում ոչ միայն սովետական մարդկանց, այլև եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդներին։

«Սովետական Միության յոթնամյա պլանը,— գրում է չինական «Ժենմին ժիբաո» թերթը,— խոսում է այն մասին, որ խաղաղ մրցակցության մեջ Սովետական Միության կողմից ղեկավարվող սոցիալիստական լագերի հաղթանակը ԱՄՆ-ի կողմից ղեկավար-



վող իմպերիալիստական լագերի նկատմամբ օրավուր մոտենում է»։

Յոթնամյա պլանում նախատեսվում է Սովետական Միության տնտեսական համագործակցության համակողմանի զարգացում բոլոր սոցիալիստական երկրների հետ։ Այս բանը խորապես ուրախացնում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների մեր բարեկամներին. Նրանց առջև նոր հնարավորություններ են բացվում՝ արագացնելու համար իրենց շարժումը նոր հասարակարգի ստեղծման ճանապարհին։ «Եթե,—գրում է ռումինական «Սկինտեյա» թերթը,— հաշվի առնենք սոցիալիստական լագերի ներսում ընկերական փոխօգնության բացառիկ նշանակությունը, որ Սովետական Միությունը ցույց է տալիս սոցիալիստական մյուս երկրներին, ապա հեշտ է հասկանալ, որ յոթնամյա պլանը լուրջ դրական ազդեցություն կունենա առանձին վերցրած յուրաքանչյուր սոցիալիստական երկրի պրոգրեսի, ինչպես նաև այն բանի վրա, որ դրանք բոլորը հասնեն տնտեսապես ամենազարգացած երկրների մակարդակին, որպեսզի բոլորը միասին մտնեն կոմունիստական հասարակարգ»։

Կոմունիստական շինարարության նոր

վիթխարի ծրագիրը հիացմունքի և խոր համակրանքի զգացում է առաջ բերում Սովետական Միության նկատմամբ նաև կապիտալիզմի երկրների աշխատավորների շրջանում։ Սովետական յոթնամյա պլանի թվերում նրանք տեսնում են արդիականության ամենահզոր ուժի աճը, որը հետևողականորեն պաշտպանում է խաղաղության, ժողովուրդների ազգային անկախության և մարդկության սոցիալական առաջընթացի գործը։ Դա կապիտալի երկրների միլիոնավոր մարդկանց պայքարին է ոգեշնչում հանուն իրենց ժողովուրդների լավագույն ապագայի։

Արտահայտելով ոչ միայն իր երկրի, այլև կապիտալիստական աշխարհի մյուս երկրների աշխատավորների զգացմունքները, Իտալական կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղարի տեղակալ Լուիջի Լոնգոն «Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած զրույցում ասել է. «... Այն վիթխարի հեռանկարները, որ Սովետական Միության և ամբողջությամբ վերցրած սոցիալիստական սիստեմի առջև բացում են նոր կոնտրոլ թվերը, մեզ՝ կապիտալիստական երկրների կոմունիստներիս համար նշանակում են, որ անհրաժեշտ է ավելի շատ և ավելի լայնո-



րեն ծավալել մեր նախաձեռնությունն ու պայքարը, որպեսզի յուրաքանչյուր երկիր առաջ շարժվի դեպի սոցիալիզմ և այդպիսով ավանդ ներմուծենք սոցիալիզմի ու խաղաղության հաղթանակի գործում՝ միջազգային մասշտաբով»։

Սովետական նոր տնտեսական պլանի կոնտրոլ թվերը մեծ գոհունակությամբ դիմավորեցին նաև Ասիայի և Աֆրիկայի՝ անկախ պետականության ուղին ոտք դրած երկրների ժողովուրդները։ Այս երկրների մամուլը վստահություն է հայտնում, որ ՍՍՌՄ հետագա տնտեսական առաջընթացը կօգնի իրենց՝ ազգային անկախության ամրապնդման համար մղվող պայքարում։ Հնդկական «Սվադխինատա» թերթը նշում է, որ ՍՍՌՄ յոթնամյա պլանի հաջող կատարումը «օգուտ կբերի ոչ միայն սոցիալիստական աշխարհին, այլ նաև Ասիայի այն երկրներին, որոնք վերջերս են նվաճել անկախություն կամ դեռևս պայքարում են անկախության համար»։

Սովետական Միության տնտեսական զարգացման յոթնամյա ծրագիրը, ընդգծում է Դամասկոսի «Ան—Նուր» թերթը, իրավամբ ժողովուրդների խաղաղության և առաջընթացի ծրագիր է։ «Եվ եթե իմպերիալիստները,— հայտարարում է թերթը,— սարսափ են զգում

Սովետական Միության պրոգրեսի առաջ, ապա մենք՝ արաբներս, խորապես ուրախանում ենք ամեն մի առաջընթաց քայլի համար, որ կատարում է մեծ սոցիալիստական պետությունը, որովհետև այդ պետությունը մեր իսկական և հավատարիմ բարեկամն է պրոգրեսի, մեր էկոնոմիկայի ծաղկման և մեր անկախության ու սուվերենության համար մղվող պայքարում»։

Այն ժամանակ, երբ սովետական տնտեսական նոր պլանի մասին լուրը խորապես ուրախացրեց մեր երկրի սահմաններից դուրս գտնվող աշխատավորներին և ամրապնդեց նրանց հույսերը լավագույն ապագայի նկատմամբ, այդ նույն ժամանակ նա շփոթ և տագնապ ծնեց Սովետական Միության թշնամիների շրջանում։ Դրա մասին կարելի է դատել ՍՍՌՄ յոթնամյա պլանի կոնտրոլ թվերի վերաբերյալ կապիտալիստական մամուլի բազմաթիվ արձագանքներից։ Միանգամայն բնորոշ է, որ ի տարբերություն անցյալի, այժմ արդեն բուրժուական առավել կամ պակաս ազդեցիկ թերթերից ոչ մեկը չի համարձակվում կասկածի տակ դնել սովետական տնտեսական պլանների իրագործելիությունը։ Ավելին, շատ թերթեր անհրաժեշտ են համարում իրենց



ընթերցողներին ետ պահել նման պատրանքներից։ «Չի կարելի ամենայն լրջությամբ Արևմուտքին չզգուշացնել Մոսկվայի նոր տնտեսական պլանների նկատմամբ թեթևամիտ վերաբերմունք ցույց տալուց»,— գրում է արևմտա-գերմանական «Զյուդդոյչե ցեյտունգ» թերթը։ Է՛լ ավելի որոշակիորեն է արտահայտվում ճապոնական մոնոպոլիաների օրգան «Սանկեյ» թերթը։ «Սխալ կլիներ,— հայտարարում է թերթը,— կասկածել հրապարակված կոնտրոլ թվերի ռեալությանը, ինչպես դա դեռևս կապիտալիստական աշխարհում յուրահատուկ է ոմանց։ Սովետական պլանը ռեալ է արդեն այն պատճառով, որ այն հիմնված է ռևոլյուցիայից հետո ընկած քառասուն տարիների փորձի վրա...»։

Բուրժուական մամուլը հարկադրված է ընդունել ոչ միայն ՍՍՌՄ նոր տնտեսական պլանի ռեալությունը, այլ նաև վիթխարի թափը։ Ամերիկյան մոնոպոլիաների օրգան «Նյու-Յորք թայմս»-ը այդ պլանն անվանում է «ամենահամարձակն այն բոլոր տնտեսական մարտահրավերներից, որոնք Ռուսաստանը երբևէ նետել է Միացյալ Նահանգներին և Արևմուտքին»։ Թերթն ընդունում է, որ իր պլաններն իրականացնելու համար Սո-

վետական Միությունն ունի անհրաժեշտ պայմանները։

Գնահատելով սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ տնտեսական մրցակցության հեռանկարները, բուրժուական շատ թերթեր հանգում են իրենց համար բացարձակ անմխիթարական եզրակացությունների։ Այսպես, ամերիկյան Բոստոն քաղաքում հրատարակվող «Կրիսչեն սայենս մոնիտոր» թերթը բացահայտ դառնությամբ հաստատում է, որ «երևան է եկել մի նոր սուր հակադրություն, այն է՝ Սովետական Միության արագացված առաջխաղացումը դեպի նոր տնտեսական վերելք և անկում ԱՄՆ-ում 1958 թվականին»։

Կապիտալիստական երկրների էկոնոմիկայի անկայունությունը մատնանշում են նաև մամուլի այլ օրգաններ։ Վաշինգտոնի «Ա. Ֆ. Ստոունս Ուիկլի» ամենշաբաթյա բյուլետենը հրապարակել է հայտնի տնտեսագետ դոկտոր Օտտո Նաթանի հոդվածը, որտեղ հեղինակը ԱՄՆ-ի 1957—1958 թվականների տնտեսական ճգնաժամի վերլուծության հիման վրա եզրակացություն է անում այն մասին, որ «կապիտալիզմը նույնքան անկայուն, անհուսալի է և նրա կոն-



յունկտուրան նույնքան կանխատեսման ոչ ենթակա, ինչպես և առաջ»։

Ինչպես երևում է մամուլի արտահայտություններից, արևմտյան երկրների կառավարող շրջաններին լրջորեն անհանգստացնում է սովետական յոթնամյա պլանի վիթխարի ձգողական ուժը, նրա հզոր ներգործությունը մյուս երկրների, առանձնապես Ասիայի և Աֆրիկայի տնտեսապես թույլ զարգացած երկրների ժողովուրդների գիտակցության վրա։

Անգլիական ֆինանսիստների օրգան «Թայմս» թերթը անհանգստությամբ նշում է այն հսկայական տպավորությունը, «որն առաջ են բերում թույլ զարգացած երկրներում ռուսական թվերն ու ռուսական հաջողությունները», առանձնապես «այն չափով, որ չափով մեծանում է նրանց առևտուրը Ռուսաստանի հետ և ռուսական տնտեսական օգնությունը»։

Հոլանդական բուրժուական «Խետ Ֆադերլանդ» թերթը տագնապ է հայտնում, թե թույլ զարգացած երկրներում «կհաղթանակի այն կարծիքը, որ ռուսական ձևով կառավարվող էկոնոմիկան ավելի արագ և ավելի լավ արդյունքներ է տալիս, քան այն սիստեմը, որին հետևում են արևմտյան երկրները»։

*Սովետական յոթնամյա պլանի մասին հաղորդագրությունը, գրում է «Նյու-Յորք Թայմս»-ը, հաստատեց այն համոզմունքը, որ Սովետական Միությունը «պատերազմ չէր մտորում»։ ՍՍՌՄ-ը, նշում է թերթը, այսուհետև ևս «խաղաղության կարիք է զգալու՝ իր նպատակներն իրականացնելու համար»։ «Նյու-Յորք Թայմս»-ին կրկնում է Լոնդոնի պահպանողական «Դեյլի մեյլ» թերթը, որը խմբագրական հոդվածում նշում է, թե Մոսկվայում հրապարակված պլանը «պահանջում է խաղաղություն և «սառը պատերազմի» թուլացում»։*

*Պետք է ասել, որ բուրժուական մամուլը, ձգնելով թուլացնել այն հսկայական տպավորությունը, որը բոլոր երկրների ժողովուրդների վրա թողել է ՍՍՌՄ նոր ժողովրդատնտեսական պլանի կոնտրոլ թվերի հրապարակումը, քիչ ջանքեր չի գործադրում, որպեսզի զրպարտի սովետական յոթնամյա պլանը, խեղաթյուրի նրա նպատակներն ու խնդիրները։ Բայց մարդկանց խաբելը բուրժուական մամուլի համար ավելի ու ավելի դժվարանում է։ Կոմունիստական շինարարության մեծ ծրագրի մասին ճշմարտությունը, որ հրապարակված է Սովետական Միությունում, օրավուր ավելի լայնորեն է տարածվում ամբողջ աշխարհում։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**1. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը մեր երկրում կոմունիստական շինարարության մեծ ծրագիրն է**

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները, *Երկեր, հատոր 27, էջ 279—333, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, *ՍՄԿԿ XXI համագումարին տրվելիք զեկուցման թեզիսները, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 14—17-ի համարներում։*

Ա. Ի. Միկոյան— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1958 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ծրագիրը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպա-*

*գրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 18-ի համարում։*

## 2. Կոմունիստական պարտիան բացի ժողովրդի շահերից ուրիշ շահեր չունի

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոմունիստական պարտիայի դերի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 283—289, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին (1903—1953)։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, *ՍՄԿԿ XXI համագումարին տրվելիք զեկուցման թեզիսները, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 14—17-ի համարներում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Վերջին հինգ տարում գյուղատնտեսության զարգացման արդյունքները և գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրները, *զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 16-ի և 17-ի համարներում։*

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի հաղորդագրությունը Սովետական Միության կոլտնտեսությունների և սովխոզների կողմից հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների մթերումների 1958 թվականի պետական պլանի հա-



ջող կատարման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

## 3. Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու մասին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երիտասարդության միության խնդիրները (*Ճառ Ռուսաստանի Կոմունիստական Երիտասարդության Միության համառուսաստանյան III համագումարում*), 2 հոկտեմբերի 1920 թ., *Երկեր, հատոր 31, էջ 343—366, Հայպետհրատ, 1952*։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի թեզիսները «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին», *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 16-ի և 17-ի համարներում։*

Նոր էտապ սովետական դպրոցի կյանքում, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 19-ի համարում։*

Միջնակարգ դպրոցի կարևոր խնդիրը, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 2-ի առաջնորդողը։*

## 4. Նոր տարին նշանավորենք նոր նվաճումներով

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին և Հայկական ՍՍՌ Մինիստրների

Սովետին, ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի շնորհավորական հեռագիրը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 9-ի համարում։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության նոր, նշանավոր վերելքի համար, «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 10-ի առաջնորդողը։

ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ— Դեպի նորանոր հաղթություններ, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 11-ի համարում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Մինիստրների Սովետին, ողջույնի հեռագիր, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 11-ի համարում։

## 5. Կոմունիստական աշխատանքի բրիգադները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Մեծ նախաձեռնություն (բանվորների հերոսության մասին թիկունքում, «Կոմունիստական շաբաթօրյակների» առթիվ), Երկեր, հատոր 29, էջ 501—533, Հայպետհրատ, 1951։

Կոմունիստական աշխատանքի բրիգադները, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 26-ի համարում։

Երիտասարդության բոլոր ուժերը պարտիայի կանխագծումների իրագործմանը, «Ս. Հ.»-ի 1958 թվականի հոկտեմբերի 27-ի առաջնորդողը։



## 6. Հայկական ՍՍՌ արդյունաբերությունը առաջիկա յոթնամյակում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, ՍՄԿԿ XXI համագումարին տրվելիք զեկուցման թեզիսները, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 14—17-ի համարներում։

Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ—Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի աճը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 9-ի համարում։

Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ— Նոր հեռանկարներ, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 4-ի համարում։

## 7. Բարելավենք անասունների խնամքը ձմեռային շրջանում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացումը, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, ՍՄԿԿ XXI համագումարին տրվելիք զեկուցման թեզիսներից, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 15-ի համարում։

Սկսվեց մսուրային շրջանը, *հոդված առաջավոր անասնապահների փորձից, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 11-րդ համարում։*

Ուկրաինայի կոլտնտեսականների հիանալի նախաձեռնությունը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 12-ի համարում։*

## 8. Բեռլինի հարցը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական կառավարության նոտաները Բեռլինի հարցի շուրջը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 28-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս Խրուշչովի պատասխանները ԳՖՌ-ի «Զյուդ-Դոյչե ցայտունգ» թերթի շեֆ-թղթակից Հ. Կեմպսկու հարցերին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 14-ի համարում։*

Բեռլինի հարցը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 30-ի համարում։*

---

# ՑԱՆԿ
## «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ 1958 ԹՎԱԿԱՆԻՆ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ







## ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ



## ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ
(Թվեր և փաստեր)

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ



ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

Թեմաներ և գրականություն ագիտատորների զրույցների համար





ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ



ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎՆԵՐԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻՆ



## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ



## ԱՇԽԱՐՀԻ ՔԱՐՏԵԶԻ ԱՌԱՋ



---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի

## 1959 ԹՎԱԿԱՆԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ:

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ.*

*1 ամիսը — 1 ռ.*

*6 ամիսը — 6 ռ.*

*12 ամիսը —12 ռ.*

*Մեկ համարը —50 կոպ.*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 24 1958 г.**

*ՎՖ 08850 Պատվեր 764 Տիրաժ 8500*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 3:*

*Գինը 50 կոպ.*